տէն: Ուրիշ խօսքով, տոլար, սթերլին եւն. պահանջել, երբ որ ուզեն :

Փարիզի մէջ այս կարգադրութիւնը կը համարեն կենսական քայլ մը, դիւրացնելու համար դրամի ազատութիւնը, որուն վրայ կը պնդեն Ամերիկացիները :

Քանի որ հրամանագիրը միայն Ֆրանքով եղած գործառնութեանց կը վերաբերի, կը նշանակէ թէ անփոփոխ պիտի մնան պատերազմէն ի վեր անշարժութեան դատապարտուած (պլոքէ) օտար մեծագումար դրամագլուխները:

Այս դիւրութիւնը տալով, անշուշտ Ֆրանսան ալ զիջումներ կը սպասէ: Այսպէս, Ֆրանքը իրենց դրամին վերածելու իրաւունք պիտի ունենան միայն այն երկիրները որոնք կը հաւանին Ֆրանք ծախել իրենց դրամին համար :

★ «Իւմանիթէ» կառավարութեան այս որոշումն ալ կը նկատէ ստրկացում Ֆրանսայի տնտեսութեան, ի նպաստ ամերիկացի դրամատէրներու եւ սեղանաւորական ընկերութեանց:

---

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՅՈՐԴԱՆԱՆԻ ԹԱԳԱՒՈՐԸ, Ապտուլլահ, Սպանիա հասնելով, դիմաւորուեցաւ 100.000 հոգինոց բազմութեան մը կողմէ: Հիւրը բաց ինքնաշարժ մը նստած էր Զօր. Ֆրանքոյի հետ:— Միջերկրականի ամերիկեան նաւատորմին հրամանատարն ալ տեսակցութիւն մը ունեցաւ թագաւորին հետ :

ՍՈՒՐԻՈՅ դնդակախաղի ախոյեան խումբերէն «Սէրքլ տը լա ժէօնէս կաթոլիկ» Պոլիս հրաւիրուած էր անցեալ յունիսին, մրցելու համար Ֆէնէրպահչէի խումբին հետ, բայց թրքական կառավարութիւնը մերժած էր անցագիր տալ հինգ հայ մարզիկներու: Թուրք թերթերը կը գրեն թէ նախապատրաստական հանդիպում մը տեղի պիտի ունենայ սուրիական խումբին հետ, յառաջիկայ հոկտեմբերին: Արդ, Սուրիացիները «վճռապէս յայտնած են որ եթէ խումբին ջիղը կազմող հայ մարզիկներուն անցագիր չտրուի, պիտի չկրնան գալ»: Ֆէնէր Պահչէի խումբը դիմում կատարած է, անցագիր ճարելու համար: Սուրիական խումբին հինգ հայ անդամներն են.— Ն. Վազատասարեան, Յակոբ Աֆարեան, Աբրահամ Ֆէչիչեան, Վազգէն Տէր Ղուկասեան եւ Հ. Արզումանեան: Խումբը ճամբայ պիտի ելլէ Սեպտ. 22ին :

ԿԸ ՀՐԱԺԱՐԻՆ.— Օսլոյի չեխական դեսպանատան գործակատարը, Եկոն Խոստովսկի, հրաժարեցաւ, իբրեւ բողոք իր երկրին բոլշեւիկեան իշխանութեան դէմ: Նոյն դեսպանատան չորրորդ պաշտօնատարն է որ կը հրաժարի: — Քոփէնհակի լեհական դեսպանատան առեւտրական գործակատարն ալ որոշեց հրաժարիլ, միեւնոյն պատճառաբանութեամբ :

ԱՆԳԼԻՈՅ արհեստակցական Միութեանց տարեկան համագումարին մէջ, որուն կը մասնակցին 889 պատգամաւորներ, իբրեւ ներկայացուցիչները ութ միլիոն անդամներու, նախագահը, Սըր Ուիլեըմ Լոթըր, յայտարարեց թէ «գործադուլը մաշած զէնք մըն է Անգլիոյ մէջ: Թող աշխարհ իմանայ թէ մեր արհեստակցական միութիւնները գտած են եւ կը գործածեն աւելի լաւ մեթոտներ՝ լուծելու համար բանուորական վէճերը, փոխանակ դիմելու գործադուլի զէնքին»: Նախագահը յետոյ առաջարկեց օրէնքէ դուրս հռչակել անպաշտօն գործադուլները, որոնք կը խանգարեն կանոնաւոր արտադրութեանց ընթացքը: Նախագահը մասնաւորապէս ձաղկեց համայնավարներու վնասակար ձեռնարկները :

ԳԵՐՄԱՆԻՈՅ Ֆրանսական մարզպանը, Փ. Ֆ. Փոնսէ (նախկին դեսպան) Պերլին այցելելով, յայտարարեց թէ նախկին մայրաքաղաքը օր մը պիտի դառնայ միութեան գիծ մը արեւելքի եւ արեւմուտքի միջեւ: «Վստահ չեմ թէ Պերլին շուտով պիտի դառնայ Գերմանիոյ մայրաքաղաքը, ինչպէս առաջ. բայց միշտ պիտի ըլլայ սիրտ մը որ կը բաբախէ»:

ԵԹՈՎՊԻՈՅ մէջ ծանր դէպք մը պատահեցաւ վերջերս : Երկաթուղիներու աշխատաւորներէն 600 բնիկներ յարձակեցան Ֆրանսացիներուն վրայ, հետեւելով որոշ ազդանշանի մը: Այս առթիւ վիրաւորուեցան 43 հոգի: Կայսրը հրամայեց անմիջապէս կախել յարձակման գլխաւոր հեղինակները: Նոր տեղեկութեանց համաձայն, յարձակումը ուղղուած էր միայն Ֆրանսացիներուն դէմ, եւ նեղութիւն չկրեցին միւս օտարականները, — Անգլիացի, Ամերիկացի, Իտալացի, Յոյն եւ Հայ: Խռովութեանց առաջքը առնուած էր զինուորական միջամտութեամբ :

ՍԱԿԱՐԱՆ (Բշ).— Սթերլին 1097 (1010), տոլար 330.40 (374), զուից. Ֆրանք 83.30 (93.50), Նափոլէոն 4530, զուից. ոսկի 4330, սթերլին 5130, տոլար (20) 21.120, ձոյլ ոսկի 648.000 Ֆր.:

ՌՈՒՐԻ ՇՐՋԱՆԻՆ մէջ Գերմանները կը չարունակեն ցոյցեր կազմակերպել գործարաններու քանդումին դէմ: Անգլիական իշխանութիւնը զինուոր ղրկեց, պաշտպանելու համար 80 գերման բանուորներ որոնց հրամայուած է քանդել քիմիական գործարան մը: Մասնագէտներու կարծիքով, քանդումը պիտի տեւէ վեց ամիս, անգործութեան մատնելով 3000 բանուորներ: Անգլ. զինուորներուն հետ, 150 գերման ոստիկաններ ալ կը հսկեն քանդումի գործողութեանց :

ԲՈՒՌՆ ԿՌԻՒ մը տեղի ունեցաւ Միլանի մէջ, համայնավար բանուորներու եւ ոստիկանութեան միջեւ: Ոստիկան մը եւ երկու բանուորներ ըսպաննուեցան, վեց ոստիկաններ եւ 12 բանուորներ վիրաւորուեցան: Հեռագիրը կ'ըսէ թէ բանուորները կրակ բացին հրացաններով եւ գնդացիրներով, յատկապէս շինուած պատնէշներէ կամ պատուհաններէ եւ պատգշամներէ, երբ ոստիկանութիւնը կարգի կը հրաւիրէր 2000 ցուցարարներ :

600 ԱՏՐՃԱՆԱԿԻ գնդակներ պարպուեցան Գերմանիոյ ամերիկեան շրջանին եւ չեխական սահմանագլուխին վրայ, երկու գիշեր անընդհատ, առանց մասնաւոր նպատակի: Առաջին գնդակները արձակուած էին Չեխերու կողմէ :

---

Օր. ԺԱՆԷԹ ՀԱՅԱԳՈՐԾԵԱՆ
Պ. ՍՈՒՐԷՆ ՍԻՄՈՆԵԱՆ
Մարսէյլ Ամուսնացած 4 Սեպտ. 1949

---

### ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## ՀԱՅ-ԲՈՅԺ

Ժողովրդական ամսաթերթ Բժշկութեան եւ Առողջապահութեան, կամ Տունին բժիշկը, 9րդ տարի: — Խմբագիր՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ:

Յունիս – Յուլիս, թիւ **102 — 103**

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ.— Խենթութիւն եւ բանաստեղծութիւն (Շ. Նարդունի). — Ծանչնալ խլիրդը առաջին օրէն (Տոքթ. Աչճեան).— Տաքի մասին (Տոքթ. Գալուստեան).— Որքան բժիշկ, այնքան հիւանդութիւն (Յ. Պարոնեան).— Թոքախտ եւ կլիմա (Տոքթ. Գրիգորեան).— Փոխանցման շրջան (Տոքթ. Սերոբեան).— Արեւի լոգանքին վնասները (Տոքթ. Լոքման).— Շաքարի հարցը (Քաղհան).— Ձիու միսին պատմականը (Փրոֆ. Պէրպէրեան).— Երիտասարդութիւնը (Տոքթ. Ալթունեան).— Էրիկ ջան (Երգ):

Տարեկան բաժնեգինն է **500** Ֆր.: Արտասահման **750** Ֆրանք: Դիմել՝ Շ. Նարդունի, 17, Rue Damesme, Paris:

---



---



---



---



---

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՓՈՆ ՏԻՕՊՆԱ.— Հ. Յ. Դ. «Կորիւն» խումբին ընդհ. ժողովը այս կիրակի կէսօրէ վերջ, ժամը 2.30ին, ծանօթ հաւաքատեղին: Ներկայանալ անդամատետրով :

ՍԷՆԹ ԱՆԹՈՒԱՆ.— Հ. Յ. Դ. «Ընկեր Կարօ» ենթակոմիտէի ընդհ. ժողովը՝ այս կիրակի ժամը 3ին, ընկեր Երանոս Մոզոսեանի բնակարանը: Կարեւոր օրակարգ: Բացակաները նկատի պիտի առնուին :

ՍԷՆ ԺԷՌՈՄ.— Հ. Յ. Դ. «Հայաստան» ենթակոմիտէի ընդհ. ժողովը, այս շաբաթ երեկոյ ժամը 9ին, սովորական հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է :

---



---

ՆԱՄԱԿԱՏՈՒՓ.— Ա. Ս. Մարսէյլ.— Թըղթակցութիւնը հրատարակուած է Օգոստոս 30ին:

---



---



---



---

Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN, 17, Rue Damesme – (13e)

